## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՖՐԱՆՔԵՒԼԵՀԱԿԱՆ միջադէպին առթիւ, հաւանական է որ առեւտրական բանակցութիւններն ալ խզուին: (Տարեկան գործառնութեանց գումարն է 90 միլիոն տոլար): Այն ատեն Ֆրանսա ուրիշ տեղէ պիտի գնէ հանքածուխը: Լեհական դեսպանատունը կը գանգատի թէ վեց Լեհեր եւս ձերբակալուած են Ֆրանսայի մէջ: Լեհաստանէն արտաքսուած են 11 Ֆրանսացի ուսուցիչներ:

ԻՍՐԱՅԷԼԻ վարչապետը, Պէն Կիւրիոն, Երուսաղէմ փոխադրուեցաւ Դշ. օր, իր պաշտօնէութեան հետ: Առաջին քայլն է այս, հաստատելու համար թէ Երուսաղէմն է Իսրայէլի մայրաքաղաքը: Խորհրդարանն ալ պիտի փոխադրուի մօտերս: Կը սպասուի նաեւ Յորդանանի Թագաւորին, որուն զօրքը գրաւած կը պահէ հին քաղաքամասը:

ԳՈՐԾԱԴՈՒԼ յայտարարեցին Իտալիոյ պետական պաշտօնեաները, աւելի քան մէկ միլիոն հոգի, 24 ժամուան համար: Վարչապետը կ'ըսէ թէ չեն կրնար 10 առ հարիւրէն աւելի յաւելում կատարել, թէ թոշակները 50 — 96 առ հարիւր աւելցած են, բաղդատելով 1938ի հետ եւն.:

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ կառավարութիւնը որոշեց արձակել չատ մը կիներ որոնք արգելափակուած են իբրեւ խռովարար:

ՍՈՒՐԻՈՅ առժամեայ դահլիճը հրաժարեցաւ: Խորհրդարանը մերժեց սահմանադրութեան նոր նախագիծը, որուն բ. յօդուածով լիազօրութիւն կը տրուի կառավարութեան՝ հրամանագիրներով գործելու, մինչեւ վերջնական սահմանադրութեան քուէարկումը: Կը կարծուի թէ նոր դահլիճին կազմութիւնը պիտի յանձնուի Խալէտ էլ Ազմի (Նախկին Նախարար):

ՅԵՏԱՁԳՈՒԱԾ է Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Փարիզի մասնաճիւղին պարահանդէսը, որ տեղի պիտի ունենար այս կիրակի:

### ՅԵՐԵԿՈՅԹ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Աղբիւր Սերոբի նահատակութեան 50րդ տարեդարձին առթիւ, յարգանքի ցերեկոյթ մը կազմակերպած է Հ. Յ. Դ. Վիէնի կոմիտէն, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Օհանջանեան ակումբին մէջ: Նոյն օրը տեղի կ'ունենայ նաեւ կոմիտէի վիճակախաղը:

ԵՐԱԺՇՏԱՊԵՏ Պ. ՆՇԱՆ-ՍԵՐԳՈՅԵԱՆԻ կողմէ երգուած 8 եկեղեցական երգերու երգապնակները հրապարակ ելած են եւ կը ծախուին Պարսամեան գրատունը, 46 rue Richer, Paris (9):

Կամ հեղինակին՝ Պ. ՍԵՐԳՈՅԵԱՆի մօտ, 27 rue Victor Hugo, Rosny s/Bois:

Մեր հոգեզմայլ շարականները պէտք է լսուին նաեւ հայ տունէն ներս եւ անոնցմով լեցուին մեր նոր սերունդի պատանիներուն հոգին: Յարգելի երաժշտապետի ձեռնարկը լաւագոյն առիթն է այդ նպատակին հասնելու:

Ահա եւ երգերը.—

1.— ՈՒՐԱԽ ԼԵՐ (հարսանեկան եւ ԴԱՐՁ ԱՆՁՆ ԻՄ (յուղարկի): 2.— ՅԱՐԵՒԵԼԻՑ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՔ, ԱՆԵՂԱՆԵԼԻ: 3.— ՃԱՆԱՊԱՐՀ, ԴՈՒՌՆ ԿԵՆԱՑ: 4.— ՃԱՆԱՊԱՐՀ (յորդորակ), ԴՈՒՌՆ ԿԵՆԱՑ (յորդորակ): Վերջին երեքը Արեւագալի մեղեդիներ են:





## ԲԱՑԱՌԻԿ ՑԱՅԳԱՀԱՆԴԷՍ

Մարսէյլի շրջանի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի հիմնադրութեան 5րդ տարեդարձին առթիւ:

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վարչութեան եւ հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի: Այս շաբաթ երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս, «Ալհամպրա»ի շքեղ սրահներուն մէջ:

Կը խօսի ընկեր ՀՐԱՆԴ ԲԱԼՈՒԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին ջութակահար ԼԵՒՈՆ ՂԵՒՈՆԴԵԱՆ, ընկերակցութեամբ Օր. Annette JULIENի, Ա. ՏԷՐ ԱՐՍԷՆԵԱՆԻ, Ս. ՍԱՐԳԻՍԵԱՆի, Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Լա Սիոթայի պարի խումբին, Հ.Յ.Դ. Նոր Սերունդի Մարսէյլի Թատերախումբին, ղեկավարութեամբ Պ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆԻ:

Կէս գիշերէն մինչեւ լոյս եւրոպական պարեր ղեկավարութեամբ Սէն Լուի Ն. Ս. «Սիամանթօ» նուագախումբի: Մուտքը ազատ է

ՅԵՏԱՁԳՈՒԱԾ է ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Շավիլի մասնաճիւղին թէյասեղանը:

ՄԱՐՍԷՅԼ – ՓՐԱՏՈՅԻ Մայր եկեղեցիին մէջ ՀՈԳԵՒՈՐ ՀԱՄԵՐԳ, այս կիրակի, ժամը ճիշդ 16.30ին: Մուտքը ազատ չափահասներու համար միայն:

ՍՈՑ. ԴԵՄ. ՀՆՉԱԿԵԱՆ կուսակցութեան 60ամեակը պիտի տօնուի, նախաձեռնութեամբ Իսի լէ Մուլինոյի մասնաճիւղին, այս կիրակի, կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Խրիմեան դպրոցի սրահը: Բանախօսութիւն, արտասանութիւններ, երգ եւ պար, մասնակցութեամբ «Եփրատ» նուագախումբի (ղեկավար Պ. Օնոսեանի):

Ընտիր պիւֆէ ժողովրդական գիներով: Մուտքը ազատ է:

### Յ. ԿԻՒՐՃԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Ողբացեալ արձանագործ ՅԱԿՈԲ ԿԻՒՐՃԵԱՆԻ մահուան առաջին տարեդարձին առթիւ պաշտօնական հոգեհանգիստ պիտի կատարուի այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցին, 15 rue Jean Goujon:

### ՓԱՐԻԶԻ Հ. Մ. Մ.Ի ՄՐՑՈՒՄՆԵՐԸ

Այս կիրակի Փարիզի Հ. Մ. Մ.ի Ա. եւ պահեստի խումբերը կը մրցին U. S. Montrougeի դէմ: Պահեստին ժամը 13.15ին: Առաջինը ժամը 15ին Porte d'Orléansի Stade Elisabethի դաշտին վրայ:

★ Առաւօտուն Stade Olierի դաշտին վրայ կրտսերները (cadet) ախոյենական մրցում (Cheminots de Paris)ի դէմ, նոյնպէս մանուկները: Ներկայ ըլլալ ժամը 9ին:




La Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN, 17 Rue Damesme – (13)


## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— «Անտօք» ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, Հայոց մատուռին մէջ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէի ընդհ. ժողովը՝ այս շաբաթ իրիկուն Խրիմեան դպրոցի սրահը: Ներկայ պիտի ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը: Ճշդապահ ըլլալ:

Հ. Յ. Դ. ԱՂԲԻՒՐ ՍԵՐՈԲ ԵՕԹՆԵՂԲԱՅՐԵԱՆ խումբի ընդհ. ժողովը՝ այս ուրբաթ երեկոյ ժամը 8ին, սովորական հաւաքատեղին (Իվրի): Կը դասախօսէ ընկեր Ա. Իսահակեան: Նիւթ՝ «Բոլշեւիզմ եւ ընկերվարութիւն»: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՊԷԼՎԻԼ.— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը այս կիրակի առաւօտ ժամը 9ին, սովորական հաւաքատեղին:

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, «Օհանջանեան» Ակումբը: Կարեւոր օրակարգ:

ՀԱՄԱԽԱՐԲԵՐԴՑԻԱԿԱՆ Միութեան Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս կիրակի, ժամը 9ին, Պար տը լա Կլոփի սրահը: Ներկայանալ անդամատետրով:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Վռամեան» ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս կիրակի կէս օրէն վերջ ժամը 3ին, սովորական հաւաքատեղին: Ներկայանալ անդամատետրերով: Բացակաները նկատի կ'առնուին:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Պէյվիլի դպրոցի կրթ. մարմնոյն ցերեկոյթ – պարահանդէսը, յունուար 1ին, ժամը 3.30էն գիշեր: Մանրամասնութիւնները յաջորդով:

### ՏԷՕՎԼԷԹ ԳԷՈՐԳԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Հ. Բ. Ը. Միութեան Մարկոսեան Հիմնարկութեան նախկին քարտուղար եւ յայտնի մտաւորական ողբ. Տէօվլէթ Գէորգեանի յիշատակին հոգեհանգստեան պաշտօն տեղի պիտի ունենայ այս կիրակի, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ:

Հ. Բ. Ը. Միութեան Եւրոպայի Կեդր. յանձնաժողովը կը հրաւիրէ յարգոյ հայ հասարակութիւնը իր ներկայութեամբ մասնակցիլ ողբացեալին յիշատակին ընծայուած այս հանդիսաւոր յարգանքին:







ԼԻԼԱՅԻ ԴՊՐՈՑԻՆ

ԱՄԱՆՈՐԻ ՀԱՆԴԷՍԸ

Կիրակի 18 Դեկտ. ժամը 3ին, Salle des Sociétés Savantes:

Ահա տեսարան մը՝ «ԱՑԾԵՄՆԻԿԸ»էն որ կը ներկայացուի դըպրոցի աշակերտներուն կողմէ

մէջ։ Նոր զեկոյց մը կ՚ըսէ թէ «Հանրապետական բանակը հարկադրուեցաւ միջամտել, վտարելու համար խռովարար տարրեր որոնք զինակցած էին օտար պետութեանց հետ»։

★ Ինչպէս կը յիշուի, Մարտ 30ին էր որ գնդ. Հիւսնի Զայիմ գրաւեց իշխանութիւնը, «վերահաստատելու համար բարեկարգութիւնը»։ Ինք ճանչցուած էր Ֆրանսասէր եւ հակառակ բրիտանական քաղաքականութեան։ 4 ամիս վերջը գլուխը վրայ կուտար, վարչապետին հետ եւ իշխանութեան գլուխ կ՚անցնէր իր գործակիցը՝ Հինաուի։ Լոնտոնի մէջ ալ կը խոստովանին թէ «Արգաւանդ Մահիկ»ի (միացում Իրաքի եւ Յորդանանի հետ) հակառակորդներն են որ կը յաղթանակեն այս անգամ։ Գնդ. Շիշաքլի կուսակից կը համարուի Սուրիոյ եւ Լիբանանի միութեան։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊՈՒԼԿԱՐԱԿԱՆ կառավարութիւնը մերժեց Մ. Նահանգներու վերջին ծանուցագիրը, որ կը բողոքէր Սոֆիայի ամերիկեան դեսպանին մասին եղած ամբաստանութեանց դէմ։ — Երեսփ. ժողովի ընտրութեանց մէջ շահած է Հայրենասիրական Ճակատը, 97—99 առ հարիւր, ինչպէս կ՚ըլլայ բոլոր բոլշեւիկեան երկիրներու մէջ։

ԼԵՀԱԿԱՆ կառավարութեան կողմէ խումբ մը Ֆրանսացիներու դէմ բացուած դատը կը շարունակուի Վրոցլաւի մէջ։ Գլխաւոր ամբաստանեալներէն Օր. Իվոն Պասալէռ վերջին պահուն նոր տեսակ կարգ մը յայտարարութիւններ եւ մերժեց բացատրել իրեն ուղղուած նամակներու ծածկագրութիւնները։ Հեռագիրը կ՚ըսէ թէ դադարի պահուն թղթակիցներուն առջեւ ցուցադրուեցան չատ մը նամակներ, որոնց մէջ Վարշաւայի Ֆրանսական դեսպանատան նախորդ զինուորական կցորդը, զօր. Թէսիէ «հարիւր հազար համբոյրներ» կ՚ուղարկէր Օր. Պասալէռի։

ԳԵՐՄԱՆԻՈՅ պատերազմի ոճրագործներէն 27 հոգի արձակուեցան ամերիկեան իշխանութեանց կողմէ, 33 հոգի ալ պիտի արձակուին չորեքշաբթի օր, «ի վարձ իրենց բարի վարուց», բանտարկութեան միջոցին։ Պատիժները պիտի լրացնէին Յունիս 30ին։

ՍԹԱԼԻՆԻ ծննդեան 70ամեակին առթիւ, Աշխատանքի Դաշնակցութիւնը շնորհաւորական հեռագիր մը ուղղեց։ Մասնաւոր պատուիրակութիւն մը ճամբայ ելած է Փարիզէն, Մոսկուա տանելու համար 3000 նուէրներ եւ հաւաքական շնորհաւորութիւններ։ Տարեդարձը կը տօնուի այսօր, չորեքշաբթի, 21 դեկտեմբեր։

ՎԵՐԱՀԱՍՏԱՏՈՒԵՑԱՒ երկաթուղիներու երթեւեկը Աթէնքի եւ Եուկոսլաւիոյ սահմանագլուխին (հիւսիս), ինչպէս եւ Թրքական սահմանագլուխին (արեւելք) հետ,, որ դադրած էր 1941էն ի վեր, գերմանական արշաւանքին հետեւանքով։

ԵՐԿՈՒ ՅԱՐԿ ՏՈՒՆԵՐ փլան Փարիզի Լաօս փողոցին մէջ, պայթումի մը հետեւանքով։ Աղջիկ մը մեռաւ, չորս վարձակալներ ծանրապէս վիրաւորուեցան։








La Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 Rue Damesme - (13)




ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

ՏԷՍԻՆ.— Ֆր. Հայ Կ. Խաչը, «Մանուկներու Օր»ը կը տօնէ Դեկտ. 25 կիրակի ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան մէջ։ Գեղարուեստական ճոխ բաժին, դպրոցի աշակերտներու կողմէ։ Նուէրներու բաշխում՝ Ծնունդի առթիւ։

ՑԱՒԱԿՑԱԿԱՆ.— Շավիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդը իր ցաւակցութիւնը կը յայտնէ ընկեր եւ ընկերուհիներ Յարութիւն եւ Աննիկ Մկրտիչեաններու, իրենց մեծ մայրիկին, եւ Մելքոն եւ Էլիզ Արսլանեաններու՝ իրենց հօրաքրոջ ցաւալի մահուան առթիւ։

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Փարիզի Հայ Աղքատախնամի վարչութիւնը իր խորին շնորհակալութիւնը կը յայտնէ բոլոր անոնց, որոնք իրենց սիրայօժար աջակցութիւնը բերին ընկերութեան տարեկան պարահանդէսի կազմակերպութեան, ինչպէս նաեւ բոլոր անոնց, որոնք զանազան առարկաներու նուիրատուութեամբ մեծապէս սատարած եղան պարահանդէսի յաջողութեան։



ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ.— Պ. Պաղտասար Պարոնեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի կը նուիրեն Պուլվար Օտտոյի Նոր Սերունդի «Խատիսեան» խումբին.— Մ. Ասլանեան հազար ֆր., Մ. Այվազեան հազար, Ք. Ստեփանեան 500 ֆր., Պուլվար Օտտոյի Կապոյտ Խաչը՝ հազար ֆր., իսկ Նոր Սերունդը Արծիւ մարզական խումբին կը նուիրէ 500 ֆրանք։



ԱՆԳԼԵՐԷՆ ԹՂԹԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՀՄՈՒՏ ԱՆՁ ՄԸ տրամադիր է շաբաթը մէկ օր յատկացնել վաճառատան մը մէջ իբրեւ թարգման կամ խմբագրող։ Դիմել «Յառաջ»ի վարչութեան։

ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրուի փակել իրենց բաժանորդագրութեանց հաշիւները մինչեւ Դեկտեմբերի վերջ։ Վարչութեանս համար դժուար է ապառիկ ձգել ամիսներով, նոյնիսկ ճշդապահ բաժանորդներու վրայ։ Շատերուն ղրկուած են արդէն իրենց հաշիւները մանտա-չէքերու թերթիկներով, դիւրացնելու համար առաքումը։ Իրենք ալ պէտք է դիւրացնեն մեր գործառնութիւնները անյապաղ վճարելով հին թէ նոր պարտքերը։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբի դասախօսութիւնը՝ այս հինգշաբթի ժամը 8.30ին, դպրոցի սրահը (78 rue Rabelais)։ Նիւթը «Հ. Յ. Դ. երրորդութիւնը»։ Կը դասախօսէ ընկեր ԱՐԱՄ ԹԱԹՈՒԼԵԱՆ։ Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները, նոյնպէս սանուհիները։

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ երեկոյեան ժամը ճիշդ 8ին, դպրոցին սրահը (78 րիւ Րապըլէ)։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Խանասոր» խումբը ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այս ուրբաթ իրիկուն ժամը 9ին, Խրիմեան սրահը։ Կարեւոր օրակարգ։

ԱԼՖՈՐՎԻԼ.— Ֆր. Կ. Խաչի ընդհ. ժողովը այս հինգշաբթի ժամը 3ին, rue des Brochets, ընկերուհի Ամիրայեանի բնակարանը։ Ներկայ կ՚ըլլայ Շրջ. վարչութեան ներկայացուցիչը։ Պարտաւորիչ ներկայութիւն։

ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ.— Ռոմանի Կապ. Խաչի մասնաճիւղը դեկտեմբերէն սկսեալ, հայերէնի ձրի դասընթացք մը բացած է, ամէն հինգշաբթի գիշեր, դասատու՝ Պ. ԱԶԳԻՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ։ Արձանագրութեանց համար դիմել Կապոյտ Խաչի վարչութեան անդամուհիներուն։

ՊԱՆԵԷՕ ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս ուրբաթ ժամը 8.30ին, Ֆրանսական վարժարանը, 69 rue d'Arcueil։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Ներկայանալ անդամատետրով։

ԳՐԱԿԱՆ ՅՈՒՇ ԵՐԵԿՈՅ ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Նուիրուած ողբացեալ ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԱՆԴԵԱՆԻ մահուան 15ամեակին։ Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի կողմէ, այս ուրբաթ երեկոյ ժամը 8ին, Հայ դպրոցի սրահին մէջ։ Սրահին ջերմութիւնը ապահովուած է։ Մուտքը ազատ է։

★ Ապտուլլահ Թագաւորը Պաղտատ գնաց երկուշաբթի օր, ինքնաշարժներու կարաւանով մը: Պիտի մնայ հինգ օր: Պաշտօնապէս կը հաստատուի թէ այցելութեան նպատակը քաղաքական է:

★ Իսրայէլի խորհրդարանը Թէլ Աւիւէն Երուսաղէմ փոխադրուած ըլլալով, առաջին նիստը գումարեց երկուշաբթի օր: Օրակարգի գլխաւոր խնդիրն էր Իսրայէլի պետական օրէնքներուն մէջ ներմուծել Ազգաժողովին ցեղասպանութեան պայմանագիրը:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՍՈՒՐԻՈՅ Հանրապետութեան նախագահը, Հաշէմ Աթասի, որ հազիւ երկու շաբաթ առաջ ընտրուած էր, հրաժարեցաւ երկուշաբթի օր: Միենոյն ատեն հրաժարեցաւ նոր դահլիճը, վարչապետութեամբ Նազըմ Քուտսի պէյի: Այս երկու դէպքերը խոր տպաւորութիւն գործեցին արաբական երկիրներուն մէջ: Տագնապը հետեւանք է երկու կուսակցութեանց հակամարտութեան եւ Սուրիան Իրաքի միացնելու ծրագրին, որուն կ'ընդդիմանայ բանակը: Շատ մը երիտասարդ սպաներ, որոնք կռուած են Պաղեստինի պատերազմին մէջ, կը վախնան թէ սուրիական բանակը պիտի կորսնցնէ իր ուժը, եթէ երկու երկիրները միանան: Միութեան կուսակիցները ուրիշ ելք չեն տեսներ, Միջին Արեւելքի քաղաքական եւ տնտեսական ապահովութեան համար:

ԻՆՏՈՆԵԶԻՈՅ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԸ հռչակուեցաւ Դեկտ. 27ին, Պաթավիայի մէջ, որ այսուհետեւ պիտի կոչուի Ճաքարթա: Այսպէս վերջ կը գտնէ Հոլանտայի աւելի քան 300 տարուան տիրապետութիւնը: Նոր պետութեան ազգ. պաշտպանութեան նախարարը զինուորական կառավարիչներ նշանակեց ութ շրջաններու մէջ, պահպանելու համար բարեկարգութիւնը: Ճոկճաքարթայի Սուլթանն ալ յորդորեց հանդարտ կենալ եւ երկրին անունը չարատաւորել, իշխանութիւնը փոխանցուած ատեն:

ԱՆԳԼԻԱ ԵՒ ԵՈՒԿՈՍԼԱՒԻԱ առեւտրական պայմանագիր մը կնքեցին հինգ տարուան համար: Տարեկան գործառնութեանց գումարը պիտի ըլլայ 22 միլիոն սթերլին: Ասկէ զատ Անգլիա 8 միլիոն սթերլինի վարկ մը պիտի բանայ Եուկոսլաւիոյ, վճարելի՝ վեց տարիէն: Պելկրատ 4,048,000 սթերլին հատուցում պիտի վճարէ նախկին բրիտանական ստացուածքներու համար:

ԴԻՄԱԴՐԱԿԱՆ ՃԱԿԱՏԻ կեղծ կազմակերպութիւն մը երեւան հանուեցաւ Փարիզի մէջ: «Ֆրանսայի Գայլեր» կոչուած այս խումբը կ'ամբաստանուի թէ կեղծ վկայականներ կը շինէր եւ կը ծախէր, սրբացնելով Գերմանիոյ գործակիցները: Գլխաւոր կազմակերպիչներն են ոստիկանական նախկին քննիչ մը, Կասթոն Լանժ, խաբեբայ մը՝ Լուի Սալվէ, իբրեւ թէ Հոհենցոլերն արքայական գերդաստանէն սերած կին մը, Կենէ (ծնեալ Մորցուն): Թերթերը կը գրեն թէ կատարուած խարդախութեանց շնորհիւ դատական հետապնդումէ փրկուած են յայտնի առեւտրականներ, որոնք միլիոնաւոր Ֆրանք արժողութեամբ ապրանքներ ծախած էին Գերմաններուն: Բազմաթիւ ձերբակալութիւններ կատարուած են: Քննութիւնները կը շարունակուին ամբողջ Ֆրանսայի մէջ:

ՄԱՆՐԷԱԿԱՆ պատերազմի առթիւ ամբաստանուած 12 ճափոնցիներու դատը կը շարունակուի Խապարովսկի մէջ (Մանչուրիա): Մոսկուայի թերթերը կը հաղորդեն թէ բոլորն ալ խոստովանած են իրենց յանցանքը: Գլխաւոր ամբաստանեալը, Տոքթ. Քավաշիմա, ըսեր է թէ 1941ին ժանտախտի մանրէներ պարունակող ռումբեր նետեցին Հարաւային Չինաստանի մէջ, թէ 1942ին գետեր, ջրհորներ եւ ջրամբարներ վարակեցին քոլերայի եւ ժանտատենդի մանրէներով, թէ հինգ տարուան ընթացքին երեք հազար հոգի մեռան, զանազան փորձերու հետեւանքով եւն.:

ՍՐԲԱԶԱՆ ՏԱՐՈՒԱՆ բացման առթիւ, Պապն ալ փայտէ պարզ խաչ մը բռնած — իբրեւ ապաշխարանքի խորհրդանշան — հետիոտն այցելեց Ս. Պետրոսի գերեզմանին վերեւ շինուած ջրհորը, քան վայրկեան ծնրադրեց եւ աղօթեց: Թափօրին կը մասնակցէին երկու հազար կղերականներ եւ վանականներ, իւրաքանչիւրը նոյնպէս փայտէ խաչ մը բռնած:

457 ՀՈԳԻ ՄԵՌԱՆ Մ. Նահանգներուն մէջ, Ծնունդի տօներուն առթիւ: Ասոնց 327ը զոհ գացած էին ինքնաշարժի արկածներու, 50ը՝ ողջ ողջ վառած են: Մեռեալներէն 49ը մանուկներ են:

ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ՇԱՀԸ ցուրտէն տկարացած ըլլալով, Նիւ Եորքի մէկ հիւանդանոցը փոխադրուեցաւ:

ԺԱՆՏԱՏԵՆԴԻ համաճարակը մեծ մտահոգութիւն կը պատճառէ Լուաւի նահանգին մէջ: Կը վախցուի որ շրջականերն ալ տարածուի: Մօտ երկու հարիւր հիւանդներ կը դարմանուին Սէնթ Էթիէնի Պէյլիւ հիւանդանոցին մէջ: «Քլորոմիսեթին» կը փնտռեն ամէն կողմ, իբրեւ հականեխական:

# «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ»

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ.— Ֆր. Կապոյտ Խաչի Շրջ. վարչութիւնը իր մօտակայ մասնաճիւղերով կը տօնէ՝ «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ»ը

Դեկտեմբեր 29, հինգշաբթի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Sociétés Savantesի մեծ սրահին մէջ, 28 rue Serpente:

ՃՈԽ ՑԱՅՏԱԳԻՐ, ՏՕՆԱԾԱՌ եւ ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱ: Մուտքը ազատ է

ՄԱՐՍԷՅԼ.— Ֆր. Կապոյտ Խաչի Մարսէյլ քաղաքի վարչութիւնը «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ»ը կը տօնէ, հինգշաբթի, 29 Դեկտեմբեր, կէսօրէ վերջ ժամը 3ին, իր դպրոցի սրահին մէջ, (Ահարոնեան Ակումբ):26 rue Des Convalescents: Փափաքող ծնողները կրնան իրենց երախաները բերել:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Ֆր. Կապ. Խաչի Շավիլի մասնաճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է ընկեր Անուշ Սարաֆեանի մօր մահուան առթիւ 500 ֆր. Պ. Ց. Արէլեանէ, 500 ֆր. ալ Տէր եւ Տիկին Պօյաճեանէ:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Պուէնոս Այրէսէն Տաքէսեան ընտանիքը խորին ցաւով կը տեղեկանայ կսկծալի մահը իր երիտասարդ ազգականուհիին Օր. Թագուհի ՍԻՄՈՆԵԱՆի եւ սրտագին վշտակցութիւնը կը յայտնէ Տէր եւ Տիկին Կրպ. Թիւֆէնկճեանի, Տէր եւ Տիկին Հայկ Սիմոնեանի, ինչպէս նաեւ Աւաւեան, Թիւֆէնկճեան, Շիրոյեան եւ Զըթըրեան ընտանիքներուն:

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՌՈՄԱՆԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի եւ Կապոյտ Խաչի մասնաճիւղերու կողմէ: Դեկտ. 29ին, հինգշաբթի երեկոյեան ժամը 9ին, Saint Barnardի սրահին մէջ: Պիտի ներկայացուի անմահն Աւետիս Ահարոնեանի «ԱՐԻՒՆՈՏ ԹԹԽՄՈՐԸ»:

Եւ խիստ ծիծաղաշարժ զաւեշտ մը՝ «ՀՆԱՐԱՄԻՏ ՎԱՐԶԱԿԱԼԸ»: Մուտքը ազատ է: Այժմէն իսկ ապահովեցէք այս առթիւ հրապարակ հանուած վիճակախաղի տոմսերը:




Le Gérant: A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN. 17 Rue Damesme - (13)


# ԴԵԿՏԵՄԲԵՐ 31ԷՆ

վերջ, կը դադրին անվճար բաժանորդագրութիւնները: Փութացէք փակել ձեր հաշիւները:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՑՈՒՑԱՏԵՍՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. ԵԳԻՊՏԱՑԻ ԿՈՄԻՏԷՆ ընդհ. ժողովի կը հրաւիրէ ընկերները այս ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Sociétés Savantesի մէջ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի դասախօսութիւնը այս հինգշաբթի ժամը 9ին, սովորական հաւաքատեղին: Կը խօսի ընկեր Յ. ԱԴԱՄԵԱՆ: Նիւթը՝ Դ. Վարուժան: Հայերէնի դասընթացք ժամը 8—9:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵՒՐՈՊԱՅԻ ՎԵՐԱԶԻՆՄԱՆ յատկացուած զէնքերու առաքումը պիտի սկսի Փետր. 2ին, այսինքն նախատեսուած ժամանակէն մէկ ամիս վերջը: Կը նշանակէ թէ Մ. Նահանգներու կառավարութիւնը միայն հինգ ամիս ժամանակ պիտի ունենայ, գործածելու համար քուէարկուած գումարը, մէկ միլիառ տոլար: Եթէ այս դրամը գործածուած չըլլայ մինչեւ 1950 Յունիս 30, պիտի վերադարձուի Մ. Նահանգներու գանձին: Ատլանտեանի դաշինքին զինակիցներէն իւրաքանչիւրը առանձին համաձայնութիւն մը պիտի ստորագրէ, իր ստանալիք զէնքերուն համար:

ԼԵՀԱՍՏԱՆ «վճռապէս» մերժեց Ֆրանսական դեսպանին բողոքագիրը՝ չորս Ֆրանսացիներու դատապարտութեան դէմ, որուն մանրամասնութիւնները ծանօթ են ընթերցողներուն:

ՄԱՆՐԷԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ դատավարութեան առթիւ, որ կը շարունակուի Մանչուրիոյ մէջ, ամբաստանեալներէն մէկը ըսած է եղեր թէ ախտածին մանրէներ փորձեր էին ամերիկացի գերիներու վրայ: Զօր. Մաք Արթըր, Ճափոնի ընդհ. հրամանատարը, անմիջապէս հերքեց այս պատմութիւնը, հետեւեալ յայտարարութեամբ.— «Ճափոնցիները քանի մը փորձեր կատարած են գերիներու վրայ, բայց որեւէ ապացոյց չկայ թէ մարդկային էակներ ալ գործածեր են այդ նպատակով»: Ոեւէ ամերիկացի գերի ալ գանգատ չէ յայտնած այս մասին:

ԺԱՆՏԱՏԵՆԴԻ ՀԱՄԱՃԱՐԱԿԸ լրջօրէն կը գրաղեցնէ առողջապահական նախարարութիւնը: Ութսուն հիւանդներ կը դարմանուին Թուլոնի մէջ: Կասկածելի կը համարուին բանջարեղէնները: Քաղաքապետը հրամայեց միջոցներ ձեռք առնել, որպէսզի միսերը խնամքով պահուին եւ արգիլեց հաց փոխադրել տուները:— Լիոնի մէջ ալ մտահոգութիւն կը տիրէ, թէեւ արձանագրուած դէպքերը ծանր հանգամանք չունին, համաձայն պաշտօնական զեկոյցի մը:

ԵԳԻՊՏՈՍԻ Թագաւորը մօտերս պիտի ամուսնանայ 16 տարեկան աղջկան մը՝ Օր. Նարիման Սատըքի հետ, որ զաւակն է պաշտօնատարի մը, ուշիմ եւ զարգացած:

ՅԵՏԱՄՆԱՑ ԵՐԿԻՐՆԵՐՈՒ համար, որոնք 200 միլիոն բնակիչ կը պարունակեն (Ափրիկէ, Լատին Ամերիկա, Միջին Արեւելք եւ Ծայր. Արեւելք) 30 միլիոն տոլար պիտի տրամադրուի առաջին առթիւ, կարգ մը պայմաններով:

ԹԷՀՐԱՆԷՆ կը հեռագրեն թէ զինուորական ատեանի առջեւ պիտի դատուին երկու Պարսիկներ որոնք փորձեր էին Ռուսաստան անցնիլ: Երկուքն ալ ամբաստանուած են իբրեւ լրտես:

ԱՅՆՇԹԱՅՆ, որ 70 տարեկան է եւ հիւանդ, յայտարարեց թէ յաջողած է աւարտել իր նոր գիւտը՝ լուծելու համար ծանրութեան օրէնքի եւ ելեկտրա-մագնիսականութեան խնդիրները:

---



---

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Տէր եւ Տիկին Խլօեան եւ Տայեան ընտանիքները իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն Վիէնէն Մաթոսեան եղբայրներուն, իրենց ողբացեալ մօր՝ ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԵՍԹԵՐ ՄԱԹՈՍԵԱՆԻ ցաւալի մահուան առթիւ:

---



# «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ»

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ.— Ֆր. Կապոյտ Խաչի Շրջ. վարչութիւնը իր մօտակայ մասնաճիւղերով կը տօնէ՝ «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ»ը

Դեկտեմբեր 29, հինգշաբթի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Sociétés Savantesի մեծ սրահին մէջ, 28 rue Serpente:

ՃՈԽ ՅԱՅՏԱԳԻՐ, ՏՕՆԱԾԱՌ եւ ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱ: Մուտքը ազատ է

ՄԱՐՍԷՅԼ.— Ֆր. Կապոյտ Խաչի Մարսէյլ քաղաքի վարչութիւնը «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ»ը կը տօնէ, հինգշաբթի, 29 Դեկտեմբեր, կէսօրէ վերջ ժամը 3ին, իր դպրոցի սրահին մէջ, (Ահարոնեան Ակումբ): 26 rue Des Convalescents: Փափաքող ծնողները կրնան իրենց երախաները բերել:

---



---

Հ. Յ. Դ. ԹԱՆԳԱՐԱՆԻ վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է ընկեր Տիգրան Զիթճեանէ (Շիկակոյէն) տասը տոլար, իր այցելութեան առիթով:

---

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ.— Վիէնէն Պ. Պօղոս Ստեփանեան կը ծանուցանէ թէ իր կնոջ Տիկ. ՎԵՐԺԻՆ ՍՏԵՓԱՆԵԱՆԻ (ծնեալ Դաւիթեան) մահուան քառասունքին առթիւ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի 1 Յունուար, առաւօտեան ժամը 9ին, Սէն Մարթէնի եկեղեցիին մէջ: Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները:

---

### ԱՀԱՐՈՆԵԱՆ ԱԿՈՒՄԲ, ՄԱՐՍԷՅԼ

Հ. Յ. Դ. Ահարոնեան Ակումբին մատակարար մարմինը շնորհակալութեամբ ստացած է Շահրիկեան գրադարանին համար հետեւեալ գիրքերը.— Պ. Զիթճեանէ Ծիրանի գօտի, La Nation Arménienne, Մեր դրախտէն (հինգ օրինակ), Մենք (գրական ամսաթերթ հինգ օրինակ), Տանջուածները:

Պ. Յարութիւն Աղայեանէ երկու տարուան «Արեւմուտք»: Պ. Յարութիւն Ուլուսեանէ «Դիցապարտ Հելլատան», «Թիւրքիզմը Անդորայէն Բագու», «Վազգէն Շուշանեան», Ալեքսանտրապոլի դաշնագիրը, Բ. հատոր, Հին երգի կտոր մը, 4 օրինակ, Հաշտարար շիրիմ մը:

Տիկին Պարգեւուհի Պետրոսեանէ Ara le bel et Semiramis, եւ 2 պատկերներ:

Ընկեր Վահան Գալէնտէրեանէ Հայ Թաթարական ընդհարումները, «Արածանի», Բ. տարի, «Կովկաս», «Եփրատեան Հայաստան», «Պայքար Թոքախտին դէմ», «Լոափորի ափերուն վրայ», «Հայրենիք» տարեգիրք 1947 եւ 1948ը:

Տիկին Նուարդ Ահարոնեանէ «Ալեկոծ քնար», «Հայրենիք Ամսագիր» (13 հատոր 948էն 1949), «Հայ-Բոյժ» 24 հատ, «Փառք Տապին Գարահիսարին»:

Մի ոմն «Գեղամ եւ Զապէլ», «Սողոմոն Թէհլիրեան, Օմար Խայեամ» 2 օրինակ:

Պ. Յարութիւն Քէֆէլեանէ «Աշխարհագաշտ» երկու օրինակ:

Գեղամ Քէրէսթէճեանէ «Փարիզ պատմական մայրաքաղաքը»:

Կը յուսանք թէ արտասահմանի հեղինակներն ալ պիտի փութան իրենց գործերէն օրինակներ նուիրել, աւելի ճոխացնելու համար գրադարանը:

Գիրք, թերթ, ամսագիր ղրկել հետեւեալ հասցէին.— A. Bediguian, 7 rue Berlios, Մարսէյլ

---


Le Gérant: A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN. 17 Rue Damesme - (13)




---



---

### ՑՈՒՑԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ԱՐԱՄ ենթակոմիտէին ընդհ. ժողովը այս երկուշաբթի ժամը 9ին, ծանօթ հաւաքատեղին:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. ԵԳԻՊՏԱՅԻ ԿՈՄԻՏԷՆ ընդհ. ժողովի կը հրաւիրէ ընկերները այս ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Sociétés Savantesի մէջ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի դասախօսութիւնը այս հինգշաբթի ժամը 9ին, սովորական հաւաքատեղին: Կը խօսի ընկեր Յ. ԱԴԱՄԵԱՆ: Նիւթը՝ Դ. Վարուժան: Հայերէնի դասընթացք ժամը 8—9:

---

## Կաղանդի առթիւ մեծ զուարճահանդէս

Կազմակերպուած՝ ՊԷԼՎԻԼԻ ԴՊՐՈՑԻ ԿՐԹ. ՄԱՐՄՆՈՅՆ ԿՈՂՄԷ: 1 Յունուար կիրակի 3.30էն՝ կէս գիշեր, Salon des Prevoyantsի մէջ, 279 rue des Pyrénées, Փարիզ, (métro Gambetta. Aut. 26 եւ 96):

Ճոխ գեղարուեստական բաժին, երգ, նուագ եւ արտասանութիւն՝ փոքրիկներէն:

ԿԱՂԱՆԴԶԷՔՆԵՐՈՒ ԲԱՇԽՈՒՄ:

Կը ներկայացուի ԿԵՂԾ ԲԺԻՇԿԸ

աշակերտներու կողմէ, կատակախաղ մէկ արար, պատրաստուած դպրոցին ուսուցիչ Տ. ՆՇԱՆԵԱՆԷ:

ԸՆՏԱՆԵԿԱՆ ՀԱՆԴԷՍ, մինչեւ կէս գիշեր:

Առատ կերուխում: Մուտքը ազատ է

---

րէչ խնդիրներու մասին: Ապա հետեւեալ պատմութիւնը կը պատմէ, Արաբի մը բերնով.

— «Երէկ առտու երեք հոգի մտան իր տունը: Անգլիացին նոր վերջացուցած էր ճաշը: Այցելուներէն մէկը, Պետեւի մը, (դատելով արտասանութեան չեշտէն) համարձակօրէն չորս գնդակ արձակեց որոնց մէկը տեղաւորուեցաւ լեարդին մօտ: Յետոյ երեք այցելուները փախան սալոնէն, կրակ տեղալով հիւրերուն վրայ: Համաձայն անգլիական սովորութեան, տիկինները, որոնց հետ եւ Տիկին Սթերլինկ, անկիւն մը քաշուած էին, սնգուրուելու համար, ճաշէն վերջ:

«Բախտը ուզեց որ գնդապետին սեղանակիցներէն մէկն ըլլայ իր «պայքարի» ընկերը, Տոքթ. Ալթունեան, վիրաբոյժ մը՝ Հալէպէն, Ինթէլիճէնս Սրրվիսի վարպետներէն մէկը: Ալթունեան կրցաւ գործողութիւն մը կատարել սախպողաբար, վիրաւորը հիւանդանոց փոխադրելէ առաջ: Մնաց որ, իր բարեկամ Ալթունեանի բնակարանը իջած էր Սթերլինկ, երբ Սուրիա վերադարձաւ 1941ին: Եւ այն ատեն Ալթունեանի հետ էր որ սկսաւ զբաղիլ Ֆրանսասէր Հայերով»:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

**ՓԱՔԻՍՏԱՆԻ** (իսլամական Հնդկաստան) խորհրդարանը ջնջեց այն բոլոր օրէնքները որոնց շնորհիւ առանձնաշնորհներ կը վայելէին Եւրոպացիները եւ Ամերիկացիները: Այսուհետեւ բոլորն ալ հաւասար են օրէնքին առջեւ, երկրին քաղաքացիներուն հետ:

**ՄԱՆՐԽԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ** առթիւ Ռուսերու կողմէ 12 ճափոնցիներու դէմ բացուած դատը ճշմարտութիւնը ծածկելու փորձ մը կը նկատէ Թոքիոյի դաշնակից խորհուրդին ամերիկեան ներկայացուցիչը: «Զենք գիտեր թէ խակապէս դատավարութիւն մը տեղի կ՚ունենա՞յ Մանչուրիոյ հետ: Եթէ նոյն իսկ դատավարութիւն մը կայ, չատոնց եղած վերջացած է»: Խորհրդային թերթերը կը շարունակեն զարմանազան պատմութիւններ հրատարակել այս դատավարութեան առթիւ, իսկ Ամերիկացիները հարցումներ կ՚ուղղեն 376.000 ճափոնցի գերիներու մասին, առանց պատասխան ստանալու:

**ՌՈՒՄԱՆԱԿԱՆ** կառավարութիւնը Ազգ. ժողովին յանձնեց օրինագիծ մը, որուն համաձայն 1950ին 40 առ հարիւր պիտի աւելցնեն արտադրութիւնը, 15 առ հարիւր պիտի բարձրացնեն ապրուստի մակարդակը, եւ զարկ պիտի տան յետամնաց շրջաններու, մասնաւորապէս Տոպրուճայի նահանգին ճարտարարուեստին, մէկ միլիոն տոլար յատկացնելով: Ծրագիրը կը տրամադրէ նաեւ.— Աւելի քան երեք միլիոն հեքթար մշակել արմտիք համար.— Աւելի հաց, միս, ձուկ, պանիր, կաթ եւ չաքար ճարել, առանց աւելցնելու բաժնեչափը,— բանուորական բնակարաններ շինել եւն.:

**ԱՆԳԼԻԱՅԷՆ** 13 ժախակողմեան երեսփոխաններ պիտի երթան Եուկոսլաւիա, քննական պտոյտ մը կատարելու համար:

**ՍԹԱԼԻՆԻ** 70ամեակին առթիւ բարեմաղթութիւններ կատարուած են Մոսկուայի եւ Խ. Միութեան բոլոր եկեղեցիներուն մէջ, բայց դրաքննութիւնը թոյլ չէ տուած որ այս լուրը արտասահման հաղորդուի:

**ՄԻՋԻՆ ԱՐԵՒԵԼՔԻ** համար ալ կարեւոր վարկ մը սահմանելով, Ամերիկացիները մասնաւորապէս կ՚ուզեն զարկ տալ հողագործութեան, համաձայն մասնագէտներու ծրագրին:

**ՍԱԿԱՐԱՆ** (Դչ.).— Սթերլին 980 (900), տոլար 349 (394), զուից. Ֆրանք 81.25 (91), Նափոլէոն 4290, սթերլին 4920, զուից. ոսկի 4110, տոլար (20) 20.320, ձոյլ ոսկի 585 հազար Ֆրանք:

---



---



---

### ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻ

Վեր. Գ. Սիսլեան, հովիւ Փարիզի Հայ Աւետ. եկեղեցւոյ, կը քարոզէ այս կիրակի, յունուար 1, ժամը 10.45ին, 58 rue Madameի ժողովասրահը, 'métro N. D. des Champs: Բնաբան՝ «Մեր օրերը համրել սորվեցուր»: Նոյն օրը, նոյն վայրը, կէսօրէ վերջ ժամը 3.30ին Ծնունդի տօնածառը: Մուտքը ազատ է:

# Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՀԱՆԴԷՍԸ

Կազմակերպուած Կեդր. վարչութեան կողմէ եւ մասնակցութեամբ Նոր Սերունդի լաւագոյն ուժերու, Salle d'Iéna, Շաբաթ 21 յունուար 1950, ժամը 9.30ին:

---

### ՄԵԾ ԽՆՋՈՅՔ ԵՒ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
### ԿԱՂԱՆԴԻ ԱՌԹԻՒ

ՆԻՍԻ Հ. Մ. Մ.ի կողմէ, չաբաթ 31 Դեկտ.ի գիշերը մինչեւ լոյս, Bld. de la Madeleine Biscuiterieին դէմ Chez Jojo:

Գեղարուեստական բաժին, ճոխ պիւֆէ, ընտիր նուագ:

Բացման խօսք Պ. Մ. ԱՆՍՈՒՐԵԱՆԷ

Մուտքը ազատ է:

---



---



---

**ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ**.— Մարսէյլի Ս. Սահակ – Մեսրոպ մայր եկեղեցիի կրօն. ընկերակցութեան վարչութիւնը կը ծանուցանէ բարեպաշտ հասարակութեան թէ, նոյն եկեղեցիի շինութեան ճարտարապետ ողբացեալ ԱՐԱՄ ԹԱՀԹԱՃԵԱՆի մահուան քառասունքին առթիւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի, մայր եկեղեցիի մէջ, 339 Ave. de Prado: Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները:

---

**ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ**.— Իսիի Կապոյտ Խաչի մասնաճիւղի անդամուհիները իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն Ճիվէլէքեան ընտանիքին եւ պարագաներուն, իրենց մօր մահուան առթիւ:

★ Կրընոպլի Կապոյտ Խաչը իր վշտակցութիւնը կը յայտնէ Սիմոնեան, Աւաւեան եւ Այվազեան ընտանիքներուն՝ Օր. ԹԱԳՈՒՀԻ ՍԻՄՈՆԵԱՆի կանխահաս մահուան առթիւ:

---

**ԿԱՂԱՆԴԻ ԱՌԹԻՒ** պատարագ, ժամը 10ին, Փարիզի Հայոց եկեղեցին, այս կիրակի, 1 յունուար:

---



---



---



# ԴԵԿՏԵՄԲԵՐ 31ԷՆ

վերջ, կը դադրին անվճար բաժանորդագրութիւնները: Փութացէք փակել ձեր հաշիւները:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

---

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ԱՐԱՄ ենթակոմիտէին ընդհ. ժողովը այս երկուշաբթի ժամը 9ին, ծանօթ հաւաքատեղին:

**ՓԱՐԻԶ**.— Հ. Յ. Դ. ԵԳԻՊՏԱՑԻ ԿՈՄԻՏԷՆ ընդհ. ժողովի կը հրաւիրէ ընկերները այս ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Sociétés Savantesի մէջ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՍԻՓԱՆ – ԿՈՄԻՏԱՍ երգչախումբի անդամներէն կը խնդրուի երկուշաբթի 9 Յունուարին, երեկոյեան ժամը 8.30ին ներկայ ըլլալ Ազգ. տան մէջ, 32 rue de Trévise, ԳՈՒՐԳԷՆ Մ. ԱԼԷՄՇԱՀԻ յիշատակի երաժշտական հանդէսին երգի փորձերուն համար:

Այս առթիւ կը հրաւիրուին նաեւ բոլոր այն երգողները որոնք կը փափաքին մասնակցիլ այս հանդէսին:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Կոմիտաս վարդապետի ծննդեան 80ամեակը կը տօնուի կիրակի 26 Փետր. 1950, ժամը 14.30ին, Սորպոնի մեծ Ամփիթատրոնին մէջ:

---



---



---



---



---



---


Le Gérant: A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN. 17 Rue Damesme – (13)

